Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 5 (24)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!


Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 5 (24)




«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

# ՀՐԱՄԱՆ

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

23 ՓԵՏՐՎԱՐԻ 1945 Թ. № 5 ՔԱՂ. ՄՈՍԿՎԱ

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիր-նավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, սպանե՛ր և գեներալնե՛ր: Այսօր մենք տոնում ենք Կարմիր Բանակի գոյության 27-րդ տարեդարձը:

Մեր Հայրենիքը օտարերկրյա զավթիչների հարձակումից պաշտպանելու համար մեծ Լենինի ստեղծած և բոլշևիկյան պարտիայի աճեցրած Կարմիր Բանակը անցել է իր զարգացման պանծալի ուղին: Նա պատվով է արդարացրել իր պատմական դերը և իրավամբ հանդիսանում է սովետական ժողովրդի սիրելի զավակը: Քաղաքացիական պատերազմի տարիներին Կարմիր Բանակը բազմաթիվ թշնամիներից պաշտպանեց սովետական երիտասարդ պետությունը: Գերմանական արշավանքի դեմ մղվող Հայրենական պատերազմի մեծ ճակատամարտերում Կարմիր Բանակը Սովետական Միության ժողովուրդներին փրկեց գերմանա-ֆաշիստական ստրկությու-

նից, պաշտպանեց մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը և Եվրոպայի ժողովուրդներին օգնեց թոթափելու գերմանական լուծը:

Կարմիր Բանակի քսանյոթերորդ տարեդարձը մենք այժմ դիմավորում ենք պատմական նոր հաղթանակների իրադրության մեջ ընդդեմ թշնամու: Կարմիր Բանակը ոչ միայն ազատագրեց հարազատ հողը հիտլերյան աղտեղությունից, այլև թշնամուն շատ հարյուրավոր կիլոմետրերով դեն շպրտեց այն ընագծերից, որտեղից գերմանացիները ավազակաբար հարձակվեցին մեր երկրի վրա, պատերազմը փոխադրեց Գերմանիայի տերիտորիան և այժմ մեր դաշնակիցների բանակների հետ միասին հաջողությամբ ավարտում է գերմանա—ֆաշիստական բանակը ջախջախելու գործը:

Այս տարվա հունվարին Կարմիր Բանակը չտեսնված ուժի հարված հասցրեց թշնամուն ամբողջ ռազմաճակատում՝ Բալթիկայից մինչև Կարպատները: Նա 1.200 կիլոմետր երկարության վրա խորտակեց գերմանացիների հզոր պաշտպանությունը, որ նրանք ստեղծել էին մի շարք տարիների ընթացքում: Հարձակման ընթացքում Կարմիր Բանակը արագ և հմուտ գործողություններով թշնամուն ետ շպրտեց հեռու՝ դեպի արևմուտք: Սովետական զորքերը համառ մարտերով առաջ շարժվեցին Արևելյան Պրուսիայի սահմաններից



մինչև Վիսլայի ստորին հոսանքը՝ 270 կիլոմետր, Վարշավայից հարավ, Վիսլայի պլացդարմից մինչև Օդեր գետի ստորին հոսանքը՝ 570 կիլոմետր, Սանդոմիրի պլացդարմից դեպի Գերմանական Սիլեզիայի խորքը՝ 480 կիլոմետր:

Մեր ձմեռային հարձակման հաջողությունները ամենից առաջ հանգեցրին այն բանին, որ տապալեցին գերմանացիների ձմեռային հարձակումը Արևմուտքում, որի նպատակն էր գրավել Բելգիան ու Էլզասը, և մեր դաշնակիցների բանակներին հնարավորություն տվեցին իր հերթին հարձակման անցնելու գերմանացիների դեմ և դրանով խզել իրենց հարձակողական գործողությունները Արևմուտքում միացնելու Կարմիր Բանակի հարձակողական գործողություններին Արևելքում:

1945 թվի հունվար—փետրվարին հարձակման 40 օրերի ընթացքում մեր զորքերը գերմանացիներին վռնդեցին 300 քաղաքներից, գրավեցին տանկեր, ինքնաթիռներ, սպառազինություն և ռազմամթերք արտադրող մոտ հարյուր գործարան, վերցրին ավելի քան 2.400 երկաթուղային կայարան, գրավեցին ավելի քան 15.000 կիլոմետր երկարությամբ երկաթուղային ցանց: Այդ կարճ ժամանակամիջոցում Գերմանիան կորցրեց ավելի քան 350.000 զինվոր ու սպա գերի ընկած և առնվազն 800 հազար սպանված: Այդ

նույն ժամանակամիջոցում Կարմիր Բանակը ոչնչացրեց ու գրավեց գերմանական մոտ 3·000 ինքնաթիռ, ավելի քան 4·500 տանկ ու ինքնագնաց հրանոթ և ոչ պակաս քան 12·000 հրանոթ:

Այդ բոլորի հետևանքով Կարմիր Բանակը ամբողջովին ազատագրեց Լեհաստանը և Չեխոսլովակիայի տերիտորիայի գգալի մասը, գրավեց Բուդապեշտը և պատերազմից դուրս բերեց Գերմանիայի եվրոպական վերջին դաշնակցին՝ Հունգարիային, գրավեց Արևելյան Պրուսիայի ու Գերմանական Սիլեզիայի մեծ մասը և իրեն համար ճանապարհ բաց արեց դեպի Բրանդենբուրգ, Պոմերանիա, դեպի Բեռլինի մատույցները:

Հիտլերականները պարծենում էին, որ ավելի քան հարյուր տարի թշնամու ոչ մի զինվոր չէր մտել Գերմանիայի սահմանները, և որ գերմանական բանակը պատերազմել է և պատերազմելու է միայն ուրիշի հողերում: Այժմ գերմանական այդ սնապարծությանը վերջ է տրված:

Մեր ձմեռային հարձակումը ցույց ավեց, որ Կարմիր Բանակը նորանոր ուժեր է գտնում ավելի բարդ ու դժվարին խնդիրներ լուծելու համար: Նրա պանծալի ռազմիկները այժմ սովորել են թշնամուն ջախջախել ու ոչնչացնել ժամանակակից ռազմական գիտության բոլոր կանոններով: Մեր մարտիկները,



ոգեշնչված իրենց ազատագրական մեծ միսիայի գիտակցությամբ, հերոսության և անձնազոհության հրաշքներ են գործում, մարտի մեջ խելամտությունը և հանդգնությունը հմտորեն զուգորդում են իրենց զենքի ուժի և հզորությունը լիովին օգտագործելու հետ: Կարմիր Բանակի գեներալներն ու սպաները կատարելապես տիրապետում են զորքերի բազմազան տեխնիկայի կենտրոնացված հարվածներ ... զուգորդում են ճկուն և ...

ընթաց մանևրի հետ: Պատերազմի չորրորդ տարում Կարմիր Բանակը դարձել է էլ ավելի ամուր և ուժեղ քան երբևիցե, Նրա մարտական տեխնիկան դարձել է էլ ավելի կատարյալ, իսկ մարտական վարպետությունը՝ բազմապատիկ բարձր:

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, սպանե՛ր և գեներալնե՛ր:

Լիակատար հաղթանակը գերմանացիների դեմ այժմ արդեն մոտ է: Բայց հաղթանակը երբեք ինքը չի գալիս,—այն ձեռք է բերվում ծանր մարտերում և համառ աշխատանքում: Դատապարտված թշնամին մարտի է նետում վերջին ուժերը, կատաղորեն դիմադրում, որպեսզի խուսափի դաժան հատուցումից: Նա կառչում է և կկառչի պայքարի ամենածայրահեղ և ամենաստոր միջոցներին: Դրա համար էլ պետք է հիշել, որ որքան ավելի մոտ է մեր հաղթանակը, այնքան ավելի բարձր

պետք է լինի մեր զգաստությունը, այնքան ավելի ուժեղ պետք է լինեն մեր հարվածները թշնամուն:

Սովետական կառավարության և մեր պանծալի բոլշևիկյան Պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ ձեզ Կարմիր Բանակի 27-րդ տարեդարձի առթիվ:

Ի նշանավորումն անցած տարվա ընթացքում Սովետական պետության զինված ուժերի տարած մեծ հաղթանակների՝

ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ.

Այսօր, փետրվարի 23-ին, Կարմիր Բանակի 27-րդ տարեդարձի օրը, ժամը 20-ին Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Մինսկում, Պետրոզավոդսկում, Տալլինում, Ռիգայում, Վիլնյուսում, Քիշնևում, Թբիլիսիում, Ստալինգրադում, Սևաստոպոլում, Օդեսայում, Լվովում սալյուտ տալ հրետանային քսան համազարկով:

Կեցցե՛ մեր հաղթական Կարմիր Բանակը:

Կեցցե՛ մեր հաղթական Ռազմա-Ծովային Նավատորմը:

Կեցցե՛ մեր հզոր Սովետական Հայրենիքը:

Հավե՛րժ փառք մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մղվող պայքարում զոհված հերոսներին:

Մա՛հ գերմանական զավթիչներին:

ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ,
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ Ի. ՍՏԱԼԻՆ



## ԴԱՇՆԱԿԻՑ ԵՐԵՔ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ՝ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ, ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԵՎ ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ ՂՐԻՄՈՒՄ

Վերջին ութ օրերի ընթացքում Ղրիմում տեղի ունեցավ դաշնակից երեք տերությունների ղեկավարների՝ Մեծ Բրիտանիայի Պրեմյեր-Մինիստր պ-ն Ու. Չերչիլլի, Ամերիկայի Միացյալ Նահանգների Պրեզիդենտ պ-ն Ֆ. Դ. Ռուզվելտի և ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետի նախագահ Ի. Վ. Ստալինի՝ Կոնֆերանսը՝ մասնակցությամբ Արտաքին Գործերի Մինիստրների, շտաբների Պետերի և այլ խորհրդականների:

Բացի երեք կառավարությունների ղեկավարներից Կոնֆերանսին մասնակցեցին հետևյալ անձինք.

Սովետական Միությունից՝ ՍՍՌՄ Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսար Վ. Մ. Մոլոտովը, Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողովրդական Կոմիսար Ն. Գ. Կուզնեցովը, Կարմիր Բանակի Գլխավոր Շտաբի Պետի Տեղակալ, բանակի գեներալ Ա. Ի. Անտոնովը, ՍՍՌՄ Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարի Տեղակալներ՝ Ա. Յա. Վիշինսկին և Ի. Մ. Մայսկին, Ավիացիայի Մարշալ Ս. Ա. Խուդյակովը, Մեծ Բրիտանիայում Դեսպան Ֆ. Տ. Գուսևը, ԱՄՆ-ում Դեսպան Ա. Ա. Գրոմիկոն:

Միացյալ Նահանգներից՝ Պետական Քարտուղար պ-ն Է. Ստետտինիուսը, Պրեզիդենտի Շտաբի Պետ, նավատորմի ադմիրալ Վ. Լեգին, Պրեզիդենտի Հատուկ Օգնական պ-ն Գ. Գոպկինսը, Զինվորական Մոբիլիզացիայի Դեպարտամենտի Դիրեկտոր դատավոր Ջ. Բիրնսը, Ամերիկյան Բանակի Շտաբի Պետ, բանակի գեներալ Ջ. Մարշալլը, ԱՄՆ-ի Ռազմա-Ծովային Ուժերի Գլխավոր Հրամանատար, նավատորմի ադմիրալ Է. Կինգը, Ամերիկյան Բանակի Մատակարարման Պետ, գեներալ-լեյտենանտ Բ. Սոմերվելլը, ադմինիստրատոր Ռազմա-ծովային փոխադրումների գծով, վիցե-ադմիրալ Ե. Լանդը, գեներալ-մայոր Լ. Կուտերը, ՍՍՌՄ-ում Դեսպան պ-ն Վ. Հարրիմանը, Պետական Դեպարտամենտի Եվրոպական բաժնի Դիրեկտոր պ-ն Ֆ. Մատտյուսը, Պետական Դեպարտամենտի քաղաքական հատուկ գործերի Գրասենյակի Դիրեկտորի Տեղակալ պ-ն Ա. Հիսսը, Պետական Քարտուղարի Օգնական պ-ն Չ. Բոլենը, քաղաքական, զինվորական և տեխնիկական խորհրդականների հետ միասին։

Մեծ Բրիտանիայից՝ Արտաքին Գործերի Մինիստր պ-ն Ա. Իդենը, Ռազմական Տրանսպորտի Մինիստր լորդ Լեզերսը, ՍՍՌՄ-ում Դեսպան պ-ն Ա. Կերրը, Արտաքին Գործերի Մինիստրի Տեղակալ պ-ն Ա. Կադոգանը, Ռազմական Կաբինետի Քարտուղար պ-ն Է. Բրիջեսը, Կայսերական Գլխավոր Շտաբի Պետ, ֆելդմարշալ Ա. Բրուկը, Օդային Ուժերի Շտաբի Պետ, Ավիացիայի Մարշալ Չ. Պորտալը, Ծովային Առաջին Լորդ, նավատորմի ադմիրալ Է. Կեննինգհեմը, Պաշտպանության Մինիստրի Շտաբի Պետ, գեներալ Գ. Իզմեյը, Միջերկրածովյան Ռազմաճակատում Դաշնակից Գերագույն Հրամանատար, ֆելդմարշալ Ալեքսանդերը, Վաշինգտոնի Բրիտանական Զինվորական Միսիայի Պետ, ֆելդմարշալ Վիլսոնը, Վաշինգտոնի Բրիտանական Զինվորական Միսիայի անդամ, ադմիրալ Սոմեր-



վիլը, զինվորական և դիվանագիտական խորհրդականների հետ միասին։

Ղրիմի Կոնֆերանսի աշխատանքի արդյունքների մասին ԱՄՆ-ի Պրեզիդենտը, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահը և Մեծ Բրիտանիայի Պրեմյեր-Մինիստրը արեցին հետևյալ հայտարարությունը.

## I

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՋԱԽՋԱԽՈՒՄԸ

Մենք քննարկեցինք և որոշեցինք դաշնակից երեք տերությունների պատերազմական պլանները ընդհանուր թշնամու վերջնական ջախջախման նպատակով։ Երեք դաշնակից ազգերի զինվորական շտաբները ամբողջ Կոնֆերանսի ընթացքում ամեն օր հանդիպում էին խորհրդակցություններում։ Այդ խորհրդակցությունները վերին աստիճանի բավարար էին բոլոր տեսակետներով և հանգեցին երեք դաշնակիցների պատերազմական ջանքերի ավելի սերտ կոորդինացման, քան եղել էր երբևիցե առաջ։ Կատարվեց ամենալիակատար ինֆորմացիայի փոխադարձ փոխանակում։ Լիովին համաձայնեցվեցին և մանրամասն պլանավորվեցին մեր բանակների և ռազմա-օդային ուժերի կողմից արևելքից, արևմուտքից, հյուսիսից ու հարավից Գերմանիայի սրտին հասցվելիք նոր և է՛լ ավելի հզոր հարվածների ժամկետները, չափերը և կոորդինացումը։

Մեր համատեղ պատերազմական պլանները հայտնի կդառնան միայն այն ժամանակ, երբ մենք դրանք կիրագործենք, բայց մենք վստահ ենք, որ մեր երեք շտաբների աշխատանքային շատ սերտ համագործակցությունը, որը ձեռք է բերվել ներկայիս Կոն-

ֆերանսում, կարագացնի պատերազմի վախճանը։ Մեր երեք շտաբների խորհրդակցությունները շարունակվելու են ամեն անգամ, երբ այդ բանի հարկ կլինի։

Նացիստական Գերմանիան դատապարտված է։ Գերմանական ժողովուրդը փորձելով շարունակել իր անհուսալի դիմադրությունը, միայն իր համար ավելի ծանր է դարձնում իր պարտության գինը։

## II

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՕԿՈՒՊԱՑԻԱՆ ԵՎ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆԸ ՆՐԱ ՆԿԱՏՄԱՄԲ

Մենք համաձայնության եկանք ընդհանուր քաղաքականության և անվերապահ կապիտուլյացիայի պայմանների հարկադիր իրագործման պլանների մասին, պայմաններ, որ մենք համատեղ կթելադրենք նացիստական Գերմանիային այն բանից հետո, երբ գերմանական զինված դիմադրությունը վերջնականապես կխորտակվի։ Այդ պայմանները չեն հրապարակվի, մինչև որ Գերմանիան լիովին ջախջախվի։ Համաձայնեցված պլանի համապատասխան, երեք տերությունների զինված ուժերը Գերմանիայում գրավելու են հատուկ գոտիներ։ Պլանը նախատեսում է կոորդինացված ադմինիստրացիա և վերահսկողություն, որոնք իրագործվելու են երեք տերությունների Գլխավոր հրամանատարներից բաղկացած Կենտրոնական Վերահսկիչ Հանձնաժողովի միջոցով, որը գտնվելու է Բեռլինում։ Որոշվել է, որ երեք տերությունները հրավիրելու են Ֆրանսիային, եթե նա այդ ցանկանա ստանձնել օկուպացիայի գոտի և որպես չորրորդ անդամ մասնակցել Վերահսկիչ Հանձնաժողովին։ Ֆրանսիական գոտու չափը համաձայնեցվելու է շահագրգռված չորս Կառավարություն-



ների միջև՝ Եվրոպական Կոնսուլտատիվ Հանձնաժողովի նրանց ներկայացուցիչների միջոցով։

Մեր անսասան նպատակն է՝ ոչնչացնել գերմանական միլիտարիզմը ու նացիզմը և երաշխիքներ ստեղծել, որ Գերմանիան այլևս երբեք ի վիճակի չլինի խախտելու ամբողջ աշխարհի խաղաղությունը։ Մենք լի ենք վճռականությամբ զինաթափելու և ցրելու գերմանական բոլոր զինված ուժերը, մեկ ընդմիշտ ոչնչացնելու գերմանական գլխավոր շտաբը, որը բազմիցս նպաստել է գերմանական միլիտարիզմի վերածնմանը, վերացնել կամ ոչնչացնել գերմանական ամբողջ ռազմական սարքավորումը, լիկվիդացնել կամ վերահսկողության տակ առնել գերմանական ամբողջ արդյունաբերությունը, որը կարող էր օգտագործվել ռազմական արտադրության համար, պատերազմի բոլոր հանցագործներին ենթարկել արդար ու արագ պատժի և նատուրայով գանձել գերմանացիների պատճառած ավերածությունների վնասների հատուցումը, երկրի երեսից ջնջել նացիստական պարտիան, նացիստական օրենքները, կազմակերպությունները և հիմնարկությունները։ Գերմանական ժողովրդի հասարակական հաստատություններից, կուլտուրական և տնտեսական կյանքից վերացնել ամեն տեսակ նացիստական և միլիտարիստական ազդեցությունը և Գերմանիայի նկատմամբ ձեռք առնել այնպիսի համատեղ այլ միջոցներ, որոնք կարող են անհրաժեշտ լինել ամբողջ աշխարհի ապագա խաղաղության և անվտանգության համար։ Մեր նպատակի մեջ չի մտնում գերմանական ժողովրդի ոչնչացումը։ Միայն այն ժամանակ, երբ նացիզմը և միլիտարիզմը արմատախիլ կարվեն, գերմանական ժողովրդի համար կլինի արժանավայել գոյության հույս և նրա համար տեղ ազգերի համագործակցության մեջ։

## III

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻՑ ԳԱՆՁՎԵԼԻՔ ՌԵՊԱՐԱՑԻԱՆԵՐԸ

*Մենք քննարկեցինք այս պատերազմում Գերմանիայի կողմից դաշնակից երկրներին պատճառված վընասի հարցը և արդարացի գտանք Գերմանիային պարտավորեցնելու հատուցել այդ վնասը նատուրայով առավել հնարավոր չափով։*

*Ստեղծվելու է վնասների հատուցման Հանձնաժողով, որին հանձնարարվում է նաև քննարկել դաշնակից երկրներին Գերմանիայի պատճառած վնասը հատուցելու չափերի ու եղանակների հարցը։ Հանձնաժողովը աշխատելու է Մոսկվայում։*

## IV

## ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

*Մենք որոշեցինք ամենամոտիկ ժամանակներս մեր դաշնակիցների հետ համատեղ հիմնել ընդհանուր միջազգային կազմակերպություն՝ խաղաղության և անվտանգության պահպանման համար։ Մենք գտնում ենք, որ դա էական է, ինչպես ագրեսիան կանխելու, այնպես էլ բոլոր խաղաղասեր ժողովուրդների սերտ ու մշտական համագործակցությամբ պատերազմի քաղաքական, տնտեսական և սոցիալական պատճառները վերացնելու համար։*

*Հիմքերը դրվել են Դումբարտոն-Օքսում։ Սակայն քվեարկման պրոցեդուրայի կարևոր հարցի վերաբերյալ այնտեղ համաձայնություն չկայացվեց։ Ներկայիս Կոնֆերանսում հաջողվեց լուծել այդ դժվարությունը։ Մենք համաձայնվեցինք, որ 1945 թվի ապրիլի 25-ին Միացյալ Նահանգներում, Սան Ֆրանցիսկոյում հրավիրվելու է Միավորված Ազգերի Կոնֆերանս՝ նախապատրաստելու համար այնպիսի կազմա-*



*կերպության Կանոնադրություն, որ համապատասխանի Դումբարտոն-Օքսում տեղի ունեցած ոչ պաշտոնական բանակցությունների ժամանակ մշակած դրույթներին։*

*Չինաստանի Կառավարության և Ֆրանսիայի Ժամանակավոր Կառավարության հետ անհապաղ կոնսուլտացիա է կատարվելու և նրանց դիմում է ուղարկվելու Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կառավարությունների հետ համատեղ մասնակցելու մյուս երկրների հրավիրմանը Կոնֆերանսին։*

*Հենց որ Չինաստանի ու Ֆրանսիայի հետ կոնսուլտացիաները ավարտվեն, քվեարկության պրոցեդուրայի վերաբերյալ առաջարկությունների տեքստը կհրապարակվի։*

## V

## ԴԵԿԼԱՐԱՑԻԱ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՎՐՈՊԱՅԻ ՄԱՍԻՆ

*Մենք կազմեցինք և ստորագրեցինք Դեկլարացիա ազատագրված Եվրոպայի մասին։ Այդ Դեկլարացիան նախատեսում է երեք տերությունների քաղաքականության համաձայնեցումը և նրանց համատեղ գործողությունները ազատագրված Եվրոպայի քաղաքական ու տնտեսական պրոբլեմները դեմոկրատական սկզբունքների համապատասխան լուծելու մեջ։ Ստորև բերվում է Դեկլարացիայի տեքստը.*

*«Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Պրեմյերը, Միացյալ Թագավորության Պրեմյեր-Մինիստրը և Ամերիկայի Միացյալ Նահանգների Պրեզիդենտը խորհրդակցեցին իրար հետ իրենց երկրների ժողովուրդների և ազատագրված Եվրոպայի*

ժողովուրդների ընդհանուր շահերի օգտին։ Նրանք համատեղ հայտարարում են, որ նրանք համաձայնվել են ազատագրված Եվրոպայում ժամանակավոր անկայունության ժամանակաշրջանի ընթացքում համաձայնեցնելու իրենց երեք Կառավարությունների քաղաքականությունը այն օգնության գործում, որ նրանք ցույց են տալու նացիստական Գերմանիայի տիրապետությունից ազատագրված ժողովուրդներին և առանցքի եվրոպական նախկին արբանյակ-պետությունների ժողովուրդներին՝ նրանց քաղաքական ու տնտեսական կենսական պրոբլեմները իրենց կողմից դեմոկրատական եղանակներով լուծելու ժամանակ։

Կարգ ու կանոնի հաստատումը Եվրոպայում և ազգային-տնտեսական կյանքի վերակառուցումը պետք է ձեռք բերվի այնպիսի միջոցով, որը ազատագրված ժողովուրդներին թույլ կտա ոչնչացնելու նացիզմի ու ֆաշիզմի վերջին հետքերը և ստեղծելու դեմոկրատական հիմնարկություններ ըստ իրենց սեփական ընտրության։ Ատլանտյան խարտիայի այն սկզբունքի համապատասխան, որով բոլոր ժողովուրդները իրավունք ունեն ընտրելու կառավարության ձևը, որի ժամանակ նրանք ապրելու են, պետք է ապահովվի սուվերեն իրավունքների և ինքնավարության վերականգնումը այն ժողովուրդների համար, որոնք ագրեսիվ ազգերի կողմից բռնության միջոցով զրկված են եղել դրանից։

Որպեսզի բարելավվեն այն պայմանները, որոնց ժամանակ ազատագրված ժողովուրդները կարողանային իրականացնել այդ իրավունքները, երեք Կառավարությունները համատեղ օգնելու են եվրոպական ամեն մի ազատագրված պետության կամ առանցքի եվրոպական նախկին արբանյակ-պետության ժողովուրդներին, որտեղ, նրանց կարծիքով, հանգամանքները պահանջում են.

ա) Ստեղծել ներքին խաղաղության պայմաններ, բ) անհետաձգելի միջոցառումներ անցկացնել կարիք



ունեցող ժողովուրդներին օգնություն ցույց տալու համար, գ) ստեղծել ժամանակավոր կառավարական իշխանություններ, որոնք լայնորեն ներկայացնեն բնակչության բոլոր դեմոկրատական տարրերը և պարտավոր լինեն ազատ ընտրությունների միջոցով ըստ հնարավորին արագ հաստատելու այնպիսի կառավարություններ, որոնք համապատասխանեն ժողովրդի կամքին և, դ) աջակցել, որտեղ այդ անհրաժեշտ լինի, այդպիսի ընտրությունների անցկացմանը։

Երբ Կառավարությունները խորհրդակցելու են մյուս Միավորված Ազգերի և ժամանակավոր իշխանությունների կամ Եվրոպայի այլ կառավարությունների հետ, երբ քննարկվելու լինեն այնպիսի հարցեր, որոնց մեջ նրանք ուղղակի շահագրգռված են։

Երբ երեք Կառավարությունների կարծիքով եվրոպական ամեն մի ազատագրված պետության մեջ կամ առանցքի եվրոպական նախկին արբանյակ-պետություններում պայմանները անհրաժեշտ կդարձնեն այդպիսի գործողությունները, նրանք անհապաղ կխորհրդակցեն միմյանց հետ սույն Դեկլարացիայով սահմանված համատեղ պատասխանատվություն իրականացնելու անհրաժեշտ միջոցառումների մասին։

Այս Դեկլարացիայով մենք կրկին հաստատում ենք մեր հավատը Ատլանտյան խարտիայի սկզբունքների նկատմամբ, մեր հավատարմությունը Միավորված Ազգերի Դեկլարացիային և մեր վճռականությունը՝ մյուս խաղաղասեր ազգերի համագործակցությամբ ստեղծել իրավունքի սկզբունքների վրա կառուցված միջազգային կարգ, որ նվիրված լինի խաղաղությանը, անվտանգությանը, ազատությանը և մարդկության ընդհանուր բարօրությանը։

Հրապարակելով սույն Դեկլարացիան, երեք տերությունները հույս են հայտնում, որ Ֆրանսիական

Ռեսպուբլիկայի Ժամանակավոր Կառավարությունը կարող է առաջարկված պրոցեդուրայի մեջ միանալ իրենց»։

## VI
## ԼԵՀԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

Մենք Ղրիմի Կոնֆերանսին հավաքվեցինք լուծելու համար մեր տարաձայնությունները լեհական հարցում։ Մենք լրիվին քննարկեցինք լեհական հարցի բոլոր ասպեկտները։ Մենք կրկին հաստատեցինք մեր ընդհանուր ցանկությունը՝ տեսնել վերականգնված ուժեղ, ազատ, անկախ և դեմոկրատական Լեհաստան, և մեր բանակցությունների հետևանքով մենք համաձայնվեցինք այն պայմանների մասին, որոնց հիման վրա Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարությունը կազմվելու է այնպիսի եղանակով, որպեսզի ճանաչվի երեք գլխավոր տերությունների կողմից։

Կայացվեց հետևյալ համաձայնությունը.

«Լեհաստանում նոր դրություն է ստեղծվել Կարմիր Բանակի կողմից այն ամբողջովին ազատագրվելու հետևանքով։ Դա պահանջում է ստեղծել Լեհական Ժամանակավոր Կառավարություն, որն ունենա ավելի լայն բազա, քան այդ հնարավոր էր մինչ այդ, մինչև Լեհաստանի արևմտյան մասի վերջերս տեղի ունեցած ազատագրումը։ Դրա համար էլ ներկայումս Լեհաստանում գործող Ժամանակավոր Կառավարությունը պետք է վերակառուցվի ավելի լայն դեմոկրատական բազայով, նրա մեջ մտցնելով դեմոկրատական գործիչներ բուն Լեհաստանից և լեհեր՝ արտասահմանից։ Այդ նոր Կառավարությունը պետք է այնուհետև անվանվի Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարություն։



Վ. Մ. Մոլոտովը, պ-րն Վ. Ա. Հարրիմանը և սըր Արչիբալդ Կ. Կերրը լիազորվում են որպես Հանձնաժողով Մոսկվայում խորհրդակցելու առաջին հերթին ներկայիս Ժամանակավոր Կառավարության անդամների և, ինչպես բուն Լեհաստանի, այնպես էլ արտասահմանի մյուս լեհ դեմոկրատական լիդերների հետ, նկատի ունենալով ներկայիս կառավարության վերակառուցումը վերոհիշյալ հիմունքներով։ Լեհական Ազգային Միասնության այդ Ժամանակավոր Կառավարությունը պետք է պարտավորություն ստանձնի որքան կարելի է շուտ անցկացնելու ազատ և ոչ մի ջանով չարգելակվող ընտրություններ, ընդհանուր ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։ Այդ ընտրություններին բոլոր հականացիստական և դեմոկրատական պարտիաները պետք է իրավունք ունենան մասնակցելու և առաջադրելու իրենց թեկնածուները։

Երբ պատշաճ ձևով, վերոհիշյալին համապատասխան կկազմվի Լեհական Ազգային Միասնության Ժամանակավոր Կառավարություն, ՍՍՌՄ Կառավարությունը, որը ներկայումս դիվանագիտական հարաբերություններ է պահպանում Լեհաստանի ներկայիս Ժամանակավոր Կառավարության հետ, Միացյալ Թագավորության Կառավարությունը և ԱՄՆ-ի Կառավարությունը դիվանագիտական հարաբերություններ կըհաստատեն Լեհական Ազգային Միասնության նոր Ժամանակավոր Կառավարության հետ և դեսպաններ կփոխանակեն, որոնց զեկուցումների հիման վրա համապատասխան կառավարությունները իրազեկ կդարձվեն Լեհաստանի դրության մասին։

Երեք Կառավարությունների ղեկավարները գտնում են, որ Լեհաստանի արևելյան սահմանը պետք է անցնի Քերզոնի գծի երկարությամբ, դրանից որոշ շրջաններում 5-ից մինչև 8 կիլոմետր շեղվելով հօգուտ Լեհաստանի։ Երեք Կառավարությունների ղե-

կավարները գտնում են, որ Լեհաստանը պետք է տերիտորիայի էական աճում ստանա հյուսիսում և արևմուտքում։ Նրանք գտնում են, որ այդ աճումների չափի հարցում հարկ եղած ժամանակ կիմացվի Լեհական Ազգային Միասնության նոր Կառավարության կարծիքը և որ դրանից հետո Լեհաստանի արևմտյան սահմանների վերջնական որոշումը կհետաձգվի մինչև խաղաղության կոնֆերանսը»։

## VII
## ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Մենք անհրաժեշտ գտանք Մարշալ Տիտոյին և դոկտոր Շուբաշիչին հանձնարարելու անհապաղ գործողության մեջ մտցնել նրանց միջև կնքված Համաձայնագիրը և այդ Համաձայնագրի հիման վրա կազմել Ժամանակավոր Միացյալ Կառավարություն։

Որոշվել է նույնպես հանձնարարել, որ Հարավսլավյան նոր Կառավարությունը, հենց որ նա ստեղծվի, հայտարարի.

1. որ Հարավսլավիայի Ազգային Ազատագրության Հակաֆաշիստական Վեչեն ընդլայնվելու է Հարավսլավիայի վերջին Սկուպշչինայի այն անդամները նրա մեջ մտցվելու հաշվին, որոնք իրենց չեն վարկաբեկել թշնամու հետ համագործակցությամբ, և այդպիսով ստեղծվելու է մի օրգան, որը կոչվելու է Ժամանակավոր Պարլամենտ.

2. որ Ազգային Ազատագրության Հակաֆաշիստական Վեչեի ընդունած օրենսդրական ակտերը հետագայում հաստատվելու են Հիմնադիր Ժողովի կողմից։

Արվել է նաև Բալկանյան մյուս հարցերի ընդհանուր տեսություն։



## VIII
## ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ամբողջ Կոնֆերանսի ընթացքում, բացի Կառավարությունների Ղեկավարների և Արտաքին Գործերի Մինիստրների ամենօրյա խորհրդակցություններից, ամեն օր տեղի էին ունենում երեք Արտաքին Գործերի Մինիստրների առանձին խորհրդակցություններ՝ նրանց խորհրդականների մասնակցությամբ։

Այդ խորհրդակցությունները չափազանց օգտակար եղան և Կոնֆերանսում համաձայնություն կայացվեց, որ պետք է ստեղծվի մշտական մեխանիզմ երեք Արտաքին Գործերի Մինիստրների միջև կանոնավոր կոնսուլտացիայի համար։ Դրա համար էլ Արտաքին Գործերի Մինիստրները հանդիպելու են այնքան հաճախակի, որքան այդ կպահանջվի, հավանաբար երեք կամ չորս ամիսը մեկ անգամ։ Այդ խորհրդակցությունները հերթով տեղի են ունենալու երեք մայրաքաղաքներում, ըստ որում առաջին խորհրդակցությունը տեղի է ունենալու Լոնդոնում՝ անվտանգության միջազգային կազմակերպություն ստեղծելու վերաբերյալ Միավորված Ազգերի Կոնֆերանսից հետո։

## IX
## ՄԻԱՍՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ, ԻՆՉՊԵՍ ՆԱԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՎԱՐԵԼՈՒ ԳՈՐԾՈՒՄ

Մեր խորհրդակցությունը Ղրիմում կրկին հաստատեց մեր ընդհանուր վճռականությունը՝ առաջիկա խաղաղության ժամանակաշրջանում պահպանել և ուժեղացնել նպատակների ու գործողությունների այն միասնականությունը, որը ժամանակակից պատերազ-

մում Միավորված Ազգերի համար հնարավոր ու անտարակուսելի դարձրեց հաղթանակը։ Մենք հավատում ենք, որ դա մեր կառավարությունների սրբազան պարտականությունն է իրենց ժողովուրդների հանդեպ, ինչպես նաև աշխարհի ժողովուրդների հանդեպ։

Միայն մեր երեք երկրների միջև և բոլոր խաղաղասեր ժողովուրդների միջև շարունակվող և հարաճուն համագործակցության ու փոխադարձ ըմբռնման դեպքում կարող է իրականացվել մարդկության ամենաբարձր ձգտումը՝ կայուն և տևական խաղաղությունը, որը պետք է, ինչպես ասված է Ատլանտյան խարտիայում՝ «ապահովի այնպիսի դրություն, որի ժամանակ բոլոր մարդիկ բոլոր երկրներում կարողանան իրենց ամբողջ կյանքն ապրել առանց վախի ու կարիքի»։

Հաղթանակը այս պատերազմում և ենթադրվող միջազգային կազմակերպության ստեղծումը մարդկության ամբողջ պատմության մեջ ամենամեծ հնարավորություն կընձեռեն, ամենամոտիկ տարիներում ստեղծելու խաղաղության կարևորագույն պայմանները։

**ՈՒԻՆՍՏՈՆ ՉԵՐՉԻԼԼ**
**ՖՐԱՆԿԼԻՆ Դ. ՌՈՒԶՎԵԼՏ**
**Ի. ՍՏԱԼԻՆ**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 00470 Պ. № 215. Տիրաժ 5000

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից
թերթերի և ամսագրերի տպարան, Երևան